Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

# ՍՈՎՈՐՈՒՅԹ

ՎԻԿՏՈՐ ԳՈԼՅԱՎԿԻՆ

Դեռ չենք հասցրել ոտք դնել պիոներական ճամբար, բայց արդեն հանգստի ժամ է: Մարդու քունը չի տանում՝ չէ, քնիր, ուզես-չուզես պետք է քնես: Կարծես գիշերվա քունը քիչ է, արի ցերեկն էլ քնիր: Ծովում առոք-փառոք լողալու ժամ է. չէ, չի կարելի, պառկիր, աչքերդ փակիր: Գիրքն ի՞նչ է, գիրք կարդալ էլ չի կարելի: Սկսեցի կիսաձայն երգել: Երգեցի, երգեցի... ու քնով անցա: Ընթրիքի ժամին մտածեցի. «Ահա թե ինչ. որպեսզի քնես, պետք է որևէ բան երգես: Այլապես քունդ չի գա»:

Հաջորդ օրը հենց որ պառկեցի, իսկույն սկսեցի երգել: Ինքս էլ չնկատեցի, թե ինչպես, բայց աստիճանաբար ձայնս այնքան բարձրացրի, որ վազելով եկավ մեր ջոկատավար Վիտյան.

— Այս ի՞նչ երգիչ է լույս աշխարհ ընկել:

Ես նրան պատասխանում եմ.

— Այլ կերպ չեմ կարողանում քնել, ահա այդ պատճառով էլ երգում եմ:

Նա ասում է.

— Իսկ եթե բոլորը սկսեն երգել, ի՞նչ կստացվի:

— Ոչինչ,— ասում եմ,— ոչ մի բան էլ չի ստացվի:

— Չէ,— ասում է,— համատարած երգեցողություն կստացվի, այլ ոչ թե հանգստյան ժամ:

— Գուցե այն ժամանակ բոլորն էլ քնե՞ն:

— Դատարկ բաներ դուրս մի՛ տա, աչքերդ փակի՛ր և քնի՛ր:

— Առանց երգի ես չեմ կարողանում քնել, աչքերս չեն փակվում:

— Կփակվեն,— ասում է,— այ, կտեսնես:

— Չէ, չեն փակվի, ես ինձ լավ եմ ճանաչում:

— Բոլոր երեխաների աչքերը փակվում են, իսկ քո աչքերը ինչո՞ւ չպիտի փակվեն:

— Որովհետև ես այդպես եմ սովորել:

— Իսկ դու փորձիր երգել ոչ-բարձրաձայն, ինքդ քեզ: Այդպես դու ավելի շուտ կքնես և ընկերներիդ էլ չես խանգարի:

Ես սկսեցի երգել ինքս ինձ: Երգեցի զանազան երգեր և աննկատ քնով անցա:

Հաջորդ օրը մենք գնացինք ծով: Լողացինք, խաղացինք: Հետո աշխատեցինք խաղողի այգում: Եվ ես մոռացա քնելուց առաջ երգել: Քնեցի միանգամից: Հանկարծակի: Միանգամայն անսպասելի:

Ա՜յ քեզ բան:

Թարգմ. Ռ. ԱՎԱԳՅԱՆԻ



Անցյալ տարի, երբ ես, ինչպես միշտ, գերազանց գնահատականներով փոխադրվեցի չորրորդ դասարան, ու քեռիս, որ մեղվաբույծ է, ինձ նորից Մեղվաստան էր տանում, մեր հարևան տիկին Պայծառը բռնեց նրան բակում, թե՝

— Օգսեն եղբայր, չի՞ լինի, որ մեր Համլիկին էլ տանենք ձեզ հետ:

Անսպասելի այդ խնդրանքից քեռուս լեզուն, ինչպես ասում են, կապ ընկավ և նա, գլուխը ուսերի մեջ քաշելով, ակնոցների հաստ ապակիների տակից խեղճացած նայեց տիկին Պայծառին:

— Հը՞, ինչո՞ւ ես այդպես նայում, Օգսեն եղբայր,— մի քիչ նեղացած տոնով ասաց տիկին Պայծառը,— ուզում ես ասել, չա՞ր է, չլո՞ղ է, ծո՞ւյլ է...

Քեռիս այնքան ամաչկոտ է ու նրբանկատ, որ նրա ամեն մի բառի վրա միայն ու միայն գլուխն էր շարժում, որ նշանակում էր՝ «այո՛, այո՛...»

Այստեղ տիկին Պայծառը կուչ եկավ ու աչքերը լցվեցին:

Բա՛, սա՛ է մեր վիճակը, Օգսեն եղբայր,— տատիս պես գլուխն օրորելով, ասաց տիկին Պայծառը,— հենց դրա համար եմ խնդրում. գոնե Աշիկը մի քիչ հետը կպարապի, որ գալ տարի էլ չմնա... Հը՞, Աշիկ ջան, չե՞ս պարապի,— ինձ դառնալով ասաց նա այնպես, որ Համլիկի փոխարեն ես ամաչեցի:

— Ինչո՞ւ չեմ պարապի, Պայծառ մորաքույր,— ասացի ես:

Այստեղ խեղճ քեռիս, ինչպես ասում են, զինաթափ եղավ, ու հենց նույն օրը ճաշից հետո ժամը 3-ին նստեցինք ավտո և ուղիղ Մեղվաստան:

Հիմա կասեք, թե այդ ի՞նչ Մեղվաստան է, Հայաստանում մի՞թե այդպիսի վայր կա: Որ ասեմ կա՝ չկա, ասեմ չկա՝ կա: Հանելուկի պես մի բան է. ինչ-որ հարցնես՝ այն ի՞նչն է, որ ամռանը կա, բայց ձմռանը՝ ոչ, իսկույն կասեն՝ տանձը, խնձորը, ծիրանը, ես ինչ գիտեմ, հազար ու մի բան, բայց ոչ ոք գլխի չի ընկնի, որ խոսքը Մեղվաստանի մասին է: Իսկ Մեղվաստանը ուղղակի մեր քթի տակ է. Երևանից Սևան կամ Ծաղկաձոր գնացողները անպայման տեսած կլինեն: Դա հենց այն ծաղկաշատ հովիտն է, որ դեռ Ծաղկաձոր չհասած, ընկնում է ճամփի աջ կողմի բլուրների մեջ: Անունը մենք ենք դրել՝ ես ու քեռիս: Քեռիս ասում է Մեղվաստանի մայրաքաղաքի ամենամեծ շենքը իր սպիտակ վրանն է, իսկ տները՝ քառակուսի, փոքրիկ-փոքրիկ փեթակները:

Երբ տեղ հասանք, Համլիկի բերանը բաց էր մնացել. ի՜նչ օդ, ի՜նչ ծաղիկներ, ի՜նչ կապույտ երկինք...

Իսկ Համլիկը, թե՝

— Մեղվաստան անունը ճիշտ չէ, սա մեղվաճամբար է, որովհետև մեղուներին քեռիդ է բերում ու տանում...

Անշնորհակալ չէ՞, սա ի՜նչ քննադատություն է...




ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Այսպես է Համլիկը... Դեռ պարծենկոտ էլ է ու մեկ էլ վախկոտ...

Նախ և առաջ պարծենկոտության մասին. փըչո՜ւմ է, փչո՜ւմ... ճիշտ է, լավ լողալ գիտի,







բայց... որպես թե Դագրա ամառանոցում եղած ժամանակ մի նավապետի փոքրիկ աղջկա է փրկել ծովում խեղդվելուց, և նավապետն այնքան է զարմացել նրա քաջության վրա, որ քեռի Գասպարից խնդրել է նրան տա «իր ձեռքի տակ» և «յոթ-ութ տարի հետո,— որպես թե ասել է այդ ռուս նավապետը,—նավապետ դարձրած ուղարկեմ Հայաստան, բոլորի էլ բերանը բաց մնա»:

Ասել է, իսկ հայրը չի համաձայնել... Կամ թե՝ Թբիլիսիում, երբ հորաքրոջ մոտ հյուր գնացել է եղել, մենակ նստում է ֆունիկուլյոր ու, հանկարծ, որպես թե պարանը կտրվում է, ու վագոնը գահավիժում ցած... Իսկ նա իրեն չի կորցնում, կախ է ընկնում զառիվայրի վրա աճած մի մասրենու թփից, մինչև որ պարանով քաշում են վեր: Մի խոսքով, մեծ մասը արկածային ֆիլմերում տեսածներն է պատմում, կարծելով, որ մենակ ինքն է կինո գնում:

Հիմա գանք իսկական պատմությանը: Ուրեմն այսպես. օգոստոսը նոր էր սկսվել, երբ մերոնք ծանոթ մի վարորդի միջոցով լուր տվեցին, որ մի օրով Մեղվաստան են գալու տիկին Պայծառի հետ: Քեռիս գլուխը կորցրեց, որովհետև արևն արդեն մայր էր մտնում:

— Դուք հո չե՞ք վախենա,— դարձավ նա մեզ, շրջապատի սարերի վրա իջնող սև ստվերներին նայելով,— ուզում եմ գնալ էս հարևան գյուղերը ոչխար գնելու:

— Ինչո՞ւ պիտի վախենանք, քեռի ջան,— ասացի ես, թեև հենց քեռուս այդ խոսքի վրա, իսկապես, ինչ-որ վախի պես բան զգացի:

— Ո՞վ գիտե, գուցե մի քիչ ուշանամ ու գիշերը վրա տա,— աչքերը խեղճ-խեղճ թարթելով ասաց քեռիս:

Ես նայեցի Համիկին ու... քաջությունս եկավ վրաս:

— Հանգիստ գնա, քեռի ջան,— ասացի ես,— հո երեխա չե՞նք, որ վախենանք:

— Դե, ի՞նչ գիտեմ...— Նորից սարերի վրա իջնող ստվերներին նայելով ասաց քեռիս ու, հանկարծ, ավելացրեց.— Ոչնչից էլ չվախենաք. թե բան է ուշացա՝ հանգիստ քնեք, ոչինչ էլ չի լինի:

Ես նորից նայեցի Համիկին, բայց այս անգամ քաջությունս մի քիչ պակասեց: Ինձ թվաց, որ նա մի քիչ գունատվել էր:

* * *

Քեռիս գնաց, ու քիչ հետո մութը պատեց չորս բոլորը: Վրանում սոսկալի մութ էր. ես վառեցի լապտերը:

— Թեյ պատրաստե՞մ,— հարցրեցի ես:

— Չէ,— խուլ, խզված ձայնով ասաց նա:

— Ես էլ չեմ ուզում,— ասացի ես,— արի ձմերուկ ուտենք, քնենք:

— Քնե՞նք...— աչքերը չռեց նա,— քեռուդ չե՞նք սպասելու...

— Դե, չէ՞ որ նա ասաց, եթե ուշանալու լինի՝ քնենք:

— Հա՜... ոնց ուզում ես,— ասես հենց այնպես ասաց նա:

Ձմերուկը կերանք: Բայց ախորժակով չէր ուտում, անընդհատ ինչ-որ կասկածանքով դեսուդեն էր նայում և ցնցվում էր, երբ վրանաճեղքերից փչող քամուց երերում էր լապտերի պատրույգն ու մեր ստվերները խաղացնում վրանի պատերի վրա: Ճիշտն ասած՝ ես էլ էի մի քիչ վախենում:

Ձմերուկը կերանք՝ պառկեցինք. հենց այդ ժամանակ էլ պաղ լուսինը ելավ:

— Լապտերը չհանգցնե՞մ,— ասացի ես,— ապակին կոտրված է՝ ծուխ է անում:

— Չէ՛, չէ՛,— հանկարծ վրա տվեց նա,— թող վառ մնա, որ քեռիդ մեզ գտնի:

Իսկ ես հանգցրեցի, որովհետև լապտերը ծուխ էր անում և լուսին էլ կար:

— Ուխա՜յ,— վերմակի մեջ փաթաթվելով ասացի ես,— ինչ լա՜վ է. հիմա դո՞ւ ես մի բան պատմելու, թե՞ ես:

Ձայն չհանեց:

— Ուզո՞ւմ ես «Մարդագելի աղջիկը» պատմե՞մ,— ասացի ես:

— Ուրիշ մի բան չգիտե՞ս...

— Ինչ է, վախենո՞ւմ ես դրանից:

Ինչո՞ւ պիտի վախենամ... պատմիր...

Սկսեցի պատմել Թումանյանի «Մարդագելի աղջիկը», իսկ դրսից լսվում էր խոտերի սվսվոցն ու վրանից մի քանի քայլ հեռու գտնվող ջարդված փեթակի կափարիչի վրա գցված տոլի փռփռոցը: Հասա այնտեղ, որտեղ այդ մարդագելի աղջիկը իր միամիտ եղբորը նստեցնում է իր սակալի պալատի դահլիճներից մեկում, իսկ ինքն անցնում կից սենյակը՝ ատամները սրելու. ու, երբ նրա նման, ատամներս սեղմած, խուլ ու դողդոջ ձայնով սկսեցի ասել՝ «Էսօ՞ր ուտեմ, թե՞ էգուց, էսօ՞ր ուտեմ, թե՞ էգուց...»— Համիկը հանկարծ ինձ ընդհատեց, թե՝

— Բայց քեռիդ շատ ուշացավ, է՞…

— Կգա էլի, ի՞նչ ես վախենում,— ասացի ես,— հերիաթի ամենալավ տեղում՝ քեռիդ ուշացա՜վ, քեռիդ ուշացավ…

Ձայն չհանեց. իսկ ես շարունակեցի։ Շարունակեցի, շարունակեցի, մինչև որ քունս տարավ… Բայց մինչև քունս տանելը, լավ եմ հիշում Համիկի դողը. կուչ էր եկել վերմակի տակ ու աչքերը ո՞նց էին պսպղում…

Կեսգիշերին, քաղցր քնիս մեջ, մեկը կողս բոթում է. վեր թռնեմ՝ տեսնեմ Համիկն է, վերմակը վրան քաշած՝ ցցվել է գլխիս։

— Ի՞նչ է եղել,— ասում եմ,— քեռի՞ն եկավ։

— Չէ, չէ,՛ չի եկել…— ատամները զնգզնգացնելով ասում է նա։— Մի լսի՜ր, էս ի՞նչ ձայն է գալիս դրսից…

Կամացուկ ականջ դրեցի։

— Քամին է,— ասացի ես,— մեկ-մեկ էլ փեթակի վրա գցված տոլն է փռփռում։

— Ի՞նչ տոլ… ատամների խուլխուլոցը չե՞ս լսում…— սարսափից դողդողալով ասում է նա՝ ականջը վրանաճեղքին մոտեցնելով։

Հենց այդ ժամանակ էլ վրանաճեղքից մի հրաշալի երախ պարզվեց ներս. ես միայն այդ տեսա և մեկ էլ Համիկի ճիչը լսեցի. այնուհետև ի՞նչ կատարվեց՝ չեմ կարող ասել, որովհետև ամեն ինչ իրար խառնվեց… Միայն այսքանն եմ հիշում, որ Համիկը մեկ իմ ճամփորդական մահճակալի վրա էր նետվում, մեկ՝ իր, հետո մտավ քեռուս մահճակալի տակ, ու երբ սոսկալի հաչոցի և գռմռոցի մեջ վրանը շուռ էր գալիս իմ գլխին, հեռու-հեռվից լսեցի քեռուս ձայնը.

— Ա՛յ տղա, ի՞նչ պատահեց… Աղասի՛, վրա՛ հասիր…

Վրա հասան, բայց բանը բանից անցել էր արդեն…

Իհարկե, ձեզ համար հիմա պարզ չի լինի, թե ինչ էր կատարվել։

Ուրեմն, քեռիս հասնում է մոտակա գյուղերից մեկը, ոչխարը գնում է և ուզում է Մեղվաստան գնալ, երբ հենց այդտեղ հանդիպում է իր մանկության ընկերներից մեկին, որ հնագետ է և Սևանի ափին պեղումներ է կատարում։ Դե, նստում են մի ժամ, երկու ժամ, մի քիչ էլ խմում են, ու, երբ քեռիս վեր է կենում Մեղվաստան գալու, այդ գյուղի հովվին՝ Աղասուն, դնում են հետը, որ քան է՝ ճամփին չմոլորվի։ Դե, որտեղ հովիվը, այնտեղ էլ իր գամփռը։ Սա, ուրեմն, քեռուց և իր տիրոջից առաջ ընկած գալիս և մեր վրանի մոտերքում ընկած ոսկորի մի կտոր է գտնում և սկսում է՝ խռռչ, հա խռռչ, որից զարթնում է, ով գիտե, գուցե և դեռ վախից չէր քնել, Համիկը ու…

Դրանից հետո գիտեք. հաչո՜ց, գռմռո՜ց, վրանը շուռ է գալիս իմ գլխին, իսկ Համիկը պոկ գալով գլխապատառ վազում է դեպի փեթակները… Երեք փեթակ էր շուռ տվել, մեղուները զարթնելով թափվել էին վրան ու այնքան կծոտել, որ առավոտյան, երբ լույսով նայեցի խեղճին, համարյա չճանաչեցի։ Աչքերը չէին երևում։

Ինչպես մայրիկս ասաց՝ «Խորովածը հարամվեց», և տիկին Պայծառը կորցրել էր գլուխը. այդպես ուռած, ֆուտբոլի գնդակի պես փքված գլխով Համիկին նստեցրին մի պատահական ավտո ու տարան Երևան…

Բայց, տեսեք, որ պարծենկոտությանն օգնեց. հիմի ո՛չ մի սուտ. մոռացել է և՛ Գագրան, և՛ Թբիլիսին, և՛ արկածային ֆիլմերը։

Նա մոռացել է, իսկ ես չեմ մոռանում։ Իսկ հայրիկս չի սիրում այսպիսի բաներ, ուր մնաց քեռիս. եթե նա իմանա, որ ես այս բոլորը այստեղ ու այնտեղ պատմում եմ՝ նշանակում է այլևս Մեղվաստան չեմ տեսնի։

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



# ԱՐՋԸ

ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



Մուշտակն հագին
Բրդոտ արջը,
Գլխի և ակին
Մեղրի փարչը,
Անուշ ու խոր
Մտել է քուն,
Երբ չորս բոլոր
Ձմեռ է, ձյուն,
Բայց հենց եկավ
Գարունը տաք,
Էլ չի մնա
Նա գետնի տակ։
Մրթմրթալով
Կելնի ոտի,
Հոգեպահուստ
Մեղրը կուտի,



Մարզանք կանի
Մի քանի օր,
Հետո կընկնի
Նա սար ու ձոր,
Ում որ տեսնի,
Բարև կտա,
Մեծ ու փոքրին
Նա կժպտա։
Բայց չար բալիկ
Լալկան Սեթին
Կտապալի
Թաթով գետին,
Հետո կանգնած
Ոտների մոտ,
Թևը կանթած,
Կասի.— Ամո՛թ...

# ՀԱՆԴԻՊՈՒՄ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Ձմեռ էր։ Քաղաքային այգու հեռավոր ծառուղիներից մեկով անցնում էր մի տղա։ Նա քիչ առաջ էր դուրս եկել դպրոցից և չէր շտապում. նրա մայրը աշխատանքից սովորաբար ուշ էր տուն գալիս, և նա կարող էր դեռ բավական թափառել։

Նա ամեն օր տուն էր գնում միայնակ։

Ձյունամած, հարթ ծառուղու վրա տղայի մեծ, հաստ ներբաններով կոշիկները թողնում էին երկարուկ հետքեր։ Ծառուղիներից մեկում, կարծես մոլորված, կանգնած էր մի շուն։ Այդ շունը սպիտակ էր, աչքերի շուրջը՝ սև, մեջքին՝ խոշոր սև խալ։

—Ջեկ,—ասաց տղան ու անցավ շան մոտով։

Շունը եկավ տղայի ետևից, տղան կանգ առավ, շունը նույնպես կանգ առավ և բարեկամաբար թափահարում էր պոչը։ Տղան քայլեց, և շունը եկավ նրա ետևից. տղան պարզեց ձեռքը, շունը մոտեցավ, և տղան շոյեց նրա ձյունոտ, թաց գլուխը։ Այսպես նրանք ծանոթացան։ Տղան լսել էր, որ որսորդական շան ականջները կախ են, և որոշեց, որ դա անպայման որսորդական շուն է։ Տղան վազեց, և շունը վազեց նրա ետևից։ Տղան վազեց ծառուղուց-ծառուղի, և շուրջը տարածվող քաղաքային լայնածավալ, ամայի այգին նրա համար վերածվեց մեծ ու ձյունոտ անտառի, ուր նրա համար ծառերի ետևներում լռում էին հազարավոր գաղտնիքներ և թաքնվում էին բազմաթիվ վտանգներ։ Բայց տղան հրացանը ձեռքին համարձակ վազում գնում էր անտառի խորքերը։ «Ջե՛կ. հասի՛ր...»—կանչում էր նա իր ետևից վազող շանը, և ինքը վազում, հասնում էր փախչող նապաստակների ետևից, նշան էր բռնում, կրակում էր։ Նա սպանեց երկու նապաստակ։ Ջեկը խելացի շուն էր. նա վազում էր ծառուղու հեռուն, հասնում էր նապաստակների ետևից և, սպանված նապաստակը ատամների մեջ բռնած, բերում էր տղային։ Ապա տղան շան հետ վազում էր մի աղվեսի ետևից, իսկ այդ աղվեսը շատ խորամանկ էր, ամեն անգամ անհետանում էր թփերի, մացառների ետևում, և ամեն անգամ տղան նրան գտնելու համար բավական փնտրում էր։ Վազվզելուց տղան քրտնել, կարմրել էր, մեծ, կոպիտ վերարկուի մեջ շոգ էր, պայուսակը խանգարում էր վազել. նա պայուսակը գցեց այգու նստարաններից մեկի վրա, հանեց, նստարանի վրա գցեց վերարկուն, գլխարկը։ Վերջապես նրանք խփեցին այդ շեկլիկ, խորամանկ աղվեսին, և հևացող, երջանկությունից շողացող տղան գրկեց համբուրեց իր բարեկամ շան դունչը։ Ապա նրանք գնացին գայլերի մի ոհմակի վրա, քշեցին նրանց անտառի խորքերը, ցրեցին, և տղան այդտեղ խփեց նրանցից մեկին։ Ա՜յ թե մեծ գայլ էր։ Նրանք ցնծությամբ երկար պտտվում էին այդ գայլի շուրջը, աղմկում էին, մինչև որ տղան սպանված

Ամբողջ ձմեռ
Դու քո լացով
Հարամ արիր
Իմ քունը ծով։
Երազներս
Թողիր կիսատ,
Այ դու լալկան,
Բա գո՞րծ է սա
Դե շուտ վե՛ր կաց,
Փախի՛ր արագ
Եվ ականջիդ
Դու օղ արա՝
Թե որ եկող
Ձմեռ դու լաս,
Մեկ էլ ներման
Հույս չունենա՛ս...

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

# ԱՄԱՌ

### ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Հեռուները կապուտակ
Լիքն են թանձր քո լույսով.
Օրորվում են բեռան տակ
Ծառերն անուշ երազով։

Շոգ է թափվում երկնքից
Մրգերի մեջ ծանրանում,
Գյուղը մտնող գետակից
Մարգերը ջուր են խմում։

Զով են խնդրում լեռներից
Ջրերն հոգնած ու անքուն,
Եվ լուռ այրող ծարավից
Սեխի շուրթերն են ճաքում։

Քնից զարթնում է քամին,
Տանձենին է թափ տալիս...
Եվ այգեպան իմ քեռին
Գիշերը տուն չի գալիս։

Երկինքը ջինջ աստղերով
Լճերի մեջ է քնում,
Եվ անտառը մինչև լույս
Ինձ իր հեքիաթն է պատմում։

*գայլին գցեց շալակը և անտառով քայլեց ծանր-ծանր։ Ա՛յ թե խոշոր գազան էր։*

*Շունը հիմա ինքն էր վազում նրա առջևից, անխոնջ, համարձակ, հոտոտում էր գետինը և անսխալ գտնում էր անտառի բոլոր գազանների հետքերը։ Եվ տղան որոշեց նրա հետ գնալ և անտառի հեռավոր թավուտում, ուր ոչ ոք չի կարող հասնել, որսալ որջում քուն մտած մեծ արջին։ Իսկ դա հեշտ բան չէ, արջին հենց իր որջում որսալը վտանգավոր է, պետք է շատ զգույշ լինել։ Եվ հրացանը ձեռքին, իր առջևից վազող շան ետևից տղան գնում էր դեպի անտառի խորքերը։*

*Այգու խորքում երևացին երեք ուրիշ տղաներ, նրանք քարշ էին տալիս վզից թոկ կապած մի շուն։ Նրանք քաշում էին թոկը, աղմկում էին։ Շունը համառում էր, չէր ուզում գնալ նրանց ետևից. այդ շունը գանգուր էր, բրդոտ, սպիտակ էր ու կեղտոտ։*

*— Հե՛յ,— ասացին այդ երեքը տղային,— քո շունը ի՞նչ շուն է։*

*— Իմ շունը որսորդի շուն է։*

*— Իսկ սա սահմանապահի շուն է,— ասացին այդ երեքը։— Արի կռվեցնենք, տեսնենք որը կհաղթի։*

*— Բո՛բ,— ասում են այդ երեքը,— վերցրո՛ւ...— ու քաշում են սպիտակ, կեղտոտ շան թոկից,— բռնի՛ր նրան. հապա հարձակվի՛ր, երբ քեզ ասում են...*

*Իսկ Բոբը առջևի թաթերը լայն դրած, գլուխը կախ՝ ետ է մղվում, համառում է, չի ուզում լսել, նրանք քաշում են թոկից, ոտքով հրում են ետևից.*

*— Դե՛, անիծված, լսի՛ր, ինչ որ քեզ ասում են... Գզի՛ր այդ շանը։*

*Միևնույն է։ Ջեկը պտտվում է այդ շան չորս բոլորը, ուրախ-ուրախ ողջունելով նրան, թափահարում է պոչը, հոտոտում է. իսկ այդ կեղտոտ Բոբի համար միևնույն է, համառում է, կռվել չի ուզում։ Իսկ այդ երեք տղաները, միևնույն է, ոչինչ չէին ուզում հասկանալ. քաշում էին թոկը, ետևից քացով հրում էին։*

*— Չե՞ք տեսնում, ինչ է,— ասաց տղան,— նա կռվել չի ուզում։*

*— Իսկ քո ի՞նչ գործն է,— ասաց այդ երեքից մեկը ու մոտեցավ տղային։— Մեր շունը քո շանը կհաղթի։*

*— Այդ դեռ ոչ ոք չգիտի,— ասաց տղան։*

*— Իսկ ես գիտեմ։ Ասա, որ կհաղթի,— և այդ մեկը, տղայից էլ բարձրահասակ, ճյուղի կտորով հրում է տղայի ուսը։ Ասա, որ մեր շունը կհաղթի։*

*Տղան զգում էր. նրանք բավական քարշ էին*

տվել այդ սպիտակ, կեղտոտ շանը, չարչարել էին, և հիմա այդ զանգրամազ, բուրդ դնչով շան վրա կռվելու ոչ մի ուժ չէր մնացել. նա հազիվ կարողանում էր համառել և չլսել նրանց: Իսկ այդ բարձրահասակը ճյուղի կտորով բոթում էր տղայի ուսը.

—Ասա, որ մեր շունը կհաղթի: Քեզ ի՞նչ եմ ասում:

Մյուս երկու տղաները, թողնելով շանը, մոտեցան տղային.

—Ինչ է, դու չե՞ս ուզում հասկանալ:

Սպիտակամազ շունը, իրեն ազատ զգալով, փախավ մի կողմի վրա: Նրանք երեքն էլ վազեցին շան ետևից, բռնեցին ու, աղմկելով, թոկից քարշ տալով հեռացան:

Իսկ որջը, որտեղ ձմեռում է անտառի մեծ արջը, գտնելը այնքան էլ հեշտ չէ. մեծ արջը իր որջը շինում է անտառի ամենախուլ անկյունում, մարդկանց աչքերից շատ հեռու: Շատ վազվզելուց տղան քրտնել էր: Շունը հավանաբար նույնպես հոգնել էր և հիմա առանձնապես մեծ հաճույքով չէր վազում նրա ետևից: Տղան կտաներ այդ շանը իրենց տուն, նրա համար բուն կշիներ, և դա իսկական որսորդական շուն էր, և, եթե տղան հրացան ունենար, ամեն օր այդ շան հետ կգնար իսկական մեծ անտառը և կորսար նապաստակներ, աղվեսներ, գայլեր, արջ էլ կորսար: Դա իսկական որսորդական շուն էր: Եվ ամեն առավոտ դպրոց գնալիս տղան կշոյեր այդ շան գլուխը, իսկ դպրոցից տուն գալիս՝ շունը պոչը թափահարելով կդիմավորեր նրան ուրախ հաչոցով: Ա՜յ, թե ինչ կուզեր տղան:

—Ջե՛կ, Ջե՛կ,—կանչում էր տղան,—գնա՜նք, Ջե՛կ:

Շունը հասկացավ, որ տղան կանչում է իրեն, կանգնեց, նայեց, բայց նրա ետևից չգնաց:

—Ջե՛կ, արի իմ ետևից,—կանչում էր տղան:

Տղան զգում էր, այդ շան՝ իր ետևից գալը իսկապես որ որևէ իմաստ չուներ: Եթե գար էլ, ո՞ւր պիտի տաներ ինքը: Այն ամենը, ինչ մտածում էր ինքը, առանձնապես մեծ բան չէր, սակայն, նա զգում էր, այդ ամենը այնպիսի բաներ էին, որ երբեք չէին լինելու և մանավանդ՝ այնպես ինչպես ինքը ուզում էր. որ մայրը չի թողնի շուն պահել, որ ինքը դեռ շատ փոքր է, և իրեն իսկական հրացան չեն տա. և որ իրեն ոչ ոք չի թողնի գնալ իսկական մեծ անտառները: Եվ քաղաքային այգու հեռավոր ծառուղում, շան հետ կանգնած, տղան շատ տխրեց: Նա այս ամենի մասին, իհարկե, չպատմեց շանը, բայց շունը հավանաբար հասկանում էր և այլևս առաջվա նման ուրախ չէր:



— Ջե՛կ, Ջե՛կ,—կանչեց նա շանը:

Շունը վարանոտ եկավ նրա ետևից,, բայց շուտով մնաց ճանապարհի վրա կանգնած: Շունը քաղցած էր. այդ տղայի հետ շունը վազվզել, հոտոտել էր այգու բոլոր անկյունները, սակայն ուտելու ոչինչ չէր գտել: Հիմա՛ շունը լավ գիտեր, այդ տղայի ետևից քարշ գալուց որևէ օգուտ չէր լինի: Շունը քաղցած էր և, բացի այդ, օրը արդեն մթնելու վրա էր և սկսում էր ցրտել:

—Ջե՛կ, արի՛, Ջե՛կ—կանչում էր տղան:

Շունը քայլեց նրանից հեռու, շունը չլսեց, դարձավ, նայեց տղայի կողմը, և տղան զգաց, որ նրան կանչելը այլևս զուր է:

Ծառուղիներից մեկում մնացած նստարանի վրայից տղան վերցրեց վերարկուն, պայուսակը, գլխարկը:

Այգու հեռավոր մի անկյունում շարված աղբ-

**Ի՞ՆՉՈՒԿ**

## Ի՞ՆՉ ԿԱՐՈՂ Է ԱՆԵԼ ԿԵՆԳՈՒՐՈՒՆ

Պարզվում է, որ շատ բան: Պետք է միայն զբաղվել նրա կրթությամբ: Կենգուրուների առաջին դպրոցը բացվել է Մելբուռնում: Նույնիսկ միջակ գնահատականներ ստացած շրջանավարտները



կարող են փոքր երեխաների «դայակներ» լինել, ֆուտբոլ խաղալ: Իսկ գերազանցիկները, որոնց տրվում է «դոկտորի» կոչում, կարող են մեքենայով հավասար խուզել գազոնները:

արկղների մոտ շունը օրվա այդ ժամերին միշտ գտնում էր ուտելիքի թափթփուկներ: Այնուհետև, երբ բոլորովին մթնած էր լինում և փողոցում ոչ ոք չէր լինում, շունը ցանկապատի բացվածքով դուրս էր գալիս այգուն մերձ փողոցը: Այդ փողոցում շատ խանութներից մեկի մոտ նստում էր գիշերային պահակը: Այդ պահակը ծեր մարդ էր: Նա հագնում էր տաք շորեր, հաստ, բամբակած անդրավարտիք ու բամբակած բանկոն, փաթաթվում էր արջի մորթուց կարված հաստ ու երկար մուշտակի մեջ, իսկ ոտքերին թաղիքե երկարաճիտ ոտնամաններ, դնում էր մինչև աչքերը իջնող մորթե ականջավոր գլխարկ, բարձրացնում էր մուշտակի լայն, բարձր օձիքը, այնպես որ դեմքը համարյա լրիվ ծածկվում էր և շուրջը ոչինչ չէր տեսնում: Բայց այդքանից հետո էլի մրսում էր: Նա՝ տակը ծակծկած դույլի մեջ կրակ էր անում. դույլը դնում էր ոտքերի արանքը ու ձեռքերը պահում վրան: Այդպես, խանութի ցուցափեղկի առջև նստած, դույլից սարքած վառարանի մոտ տաք էր:

—Հը՞, եկա՞ր,—ասում էր ծանոթ պահակը շանը,—դե, արի, արի տաքացիր:

Շունը կծկվում էր ծեր պահակի ոտքերի առջև, դունչը խրում էր թաթերի արանքը, և դույլից սարքված վառարանի մոտ ամբողջ գիշերը տաք էր:

Հետևյալ օրը դպրոցից տուն գալիս տղան ընկերներին պատմում էր.

—Ես իսկական որսորդական շուն ունեմ:

Դա այնքան էլ հավատալու բան չէր, և ընկերները նրան հետաքրքրությամբ լսում էին:

—Երեկ մեծ անտառում ինձ վրա երեք ավազակներ հարձակվեցին: Իմ շունը ընկավ նրանց ետևից, ու նրանք երեքն էլ փախան տարբեր կողմերի վրա:

Նրանց համար զարմանալի էր, որ տղան կարողանում էր այդպես հետաքրքիր հնարել:

—Իսկական մեծ անտառում ես իմ շան հետ երեկ խփեցի երեք նապաստակ, մի աղվես ու գայլ:

Ինչ-որ մեկը փռթկաց, և տղան զգում էր, որ նրանք իրեն չէին հավատում: Նա լռեց ու, չգիտես ինչու, տխրեց: Քիչ անց նա աննկատելի բաժանվեց ընկերներից, օանր կոշիկները քաշ տալով անցավ փողոցը և միայնակ քայլեց դիմացի տաքացած, արևոտ մայթով:



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

## ԴՊՐՈՑ ԵՆ ԳՆՈՒՄ ՔԱՅԼԱՁՈՂԵՐՈՎ



Քայլաձողերի վրա քայլել սովորելը Ճապոնիայի Եկո կղզու դպրոցականների ամենահիմնական առարկաներից մեկն է: Բանն այն է, որ դպրոցը գտնըվում է հարևան՝ Աբուսիմա կղզու վրա, որը Եկոյից անջատված է մի ծանծաղ նեղուցով:

Սովորաբար աշակերտներին դպրոց են տանում հատուկ նավակներով: Բայց երբեմն նեղուցը շատ է ծանծաղում, և երեխաները ստիպված են լինում գնալ քայլաձողերով: Եվ, բնականաբար, այդ առարկայից բոլոր աշակերտները գերազանցիկներ են:



# ՏԱՍԸ ՏԱՐԵԿԱՆ ԿՈՄՊՈԶԻՏՈՐԸ

Նա ընդամենը տասը տարեկան է: Ինչպես բոլոր տղաները, նա էլ է գնում դպրոց, պատրաստում դասերը, ֆուտբոլ խաղում:

Առաջին անգամ ես նրան տեսա բակում: Նա ինքնամոռաց խփում էր գնդակը, ոչինչ չտեսնելով շուրջը, բացի հակառակորդի դարբասից:

—Ո՞վ է ձեզանից Արիկ Ղազարյանը,—հարցրեցի ես:

Բոլորը շրջվեցին դեպի փոքրիկ, նիհար, մեծ-մեծ, բայց բավական լուրջ աչքերով պատանին:

Նա մոտեցավ ինձ և հարցրեց.

— Դուք երևի մայրիկին եք ուզո՞ւմ, նա տանն է:

Ես որոշեցի չխանգարել նրան, բարձրացա աստիճաններով և թակեցի Ղազարյանների տան դուռը:

Հետո արդեն հաճախ էի լինում Ղազարյանների մոտ: Շատ հաճախ մոտենալով նրանց դռանը, ես լսում էի երաժշտություն՝ մանկուց ինձ ծանոթ (նշանակում էր՝ Արիկը պատրաստում է տնային հանձնարարությունը) կամ էլ նոր, բոլորովին անծանոթ, այդ արդեն նշանակում էր, որ նա ստեղծագործում է:

Մի անգամ ես աստիճանների վրա տեսա մի պատանու՝ Արիկին հասակակից: Նա նստել էր աստիճաններին, ձեռքերով հենվել էր ծնկներին և լսում էր...

— Լսո՞ւմ ես:

Նա լուռ գլխով արեց:

— Դո՞ւր է գալիս:

— Այո:

— Իսկ վաղո՞ւց ես այստեղ նստած:

— Վաղուց:

Տղան պատասխանում էր շատ հակիրճ:

— Իսկ չե՞ս ձանձրանում:

Նա զարմացած նայեց ինձ...

Մենք լռեցինք և այս անգամ երկար: Իսկ բաց պատուհաններից լսվում էին դաշնամուրի հնչյունները:

Արիկի հայրը՝ Սերգեյ Ղազարյանը, երաժիշտ է, դասավանդում է կոնսերվատորիայում: Այդ պատճառով էլ նրանց տանը անընդհատ երաժշտություն է հնչում: Նվագում է և քույրը՝ Գայանեն: Եվ ահա մի անգամ Արիկը նստեց դաշնամուրի մոտ ու լսողությամբ նվագեց այն, ինչ նվագում էր քույրը:

Բայց Արիկը ոչ միայն սիրում է նվագել, այլև ստեղծագործել: «Քարավան»՝ այսպես է անվանել իր առաջին ստեղծագործությունը չորսամյա կոմպոզիտորը: Այն, իհարկե, խիստ տարբերվում է այժմյան ստեղծագործություններից: Նրա ստեղծագործություններն այժմ ավելի խոր և լուրջ են: Արիկն էլ մեծացել է: Չէ՞ որ անցել է վեց տարի:

Անցյալ տարի մայիսի 6-ին ֆիլհարմոնիայի փոքր դահլիճում տեղի ունեցավ Չայկովսկու անվան տասնամյա դպրոցի սաների հաշվետու համերգը: Երրորդ դասարանցի Արիկ Ղազարյանը հանդես եկավ սիմֆոնիկ նվագախմբի հետ:

Տոնական դահլիճը ողողված էր լույսով, ուրախ դեմքերով, ժպիտներով և ծաղիկներով:

Դահլիճը միանգամից լռեց, երբ բեմ դուրս ելավ փոքրիկ պատանին: Նա մոտեցավ դաշնամուրին, նստեց աթոռի ծայրին, ոտքերը հազիվ պեդալներին հասցնելով, բարակ մատներով հպվեց սպիտակ, սառը ստեղներին: Նա նվագում էր Պաուլինայի «Կոնցերտինոն»:

Ունկնդիրները մոռացել էին, որ իրենց առջև նստած է ընդամենը ինը տարեկան մի երեխա: Բայց երբ նվագն ավարտվեց, ծափահարությունների փոթորիկը ամեն ինչ դարձրեց իրական: Բեմում, հսկայական դաշնամուրի կողքին կանգնած

էր փոքրիկ, քիչ շփոթված մի տղա և անվստահ խոնարհվում էր: Նրա համար անսովոր էին և՛ այդ փայլփլող դահլիճը, և՛ ծափահարությունները, և՛ անծանոթ մարդիկ, այն էլ այդքան շատ:

Արիկը նորից նստեց դաշնամուրի առջև, նվագեց, այս անգամ իր նոր «Պոեմը»: Այդ օրը երևի Արիկի կյանքի ամենաերջանիկ օրն էր, ամենաերջանիկը, եթե չհաշվենք և այն օրը, երբ նրան լսեցականավոր կոմպոզիտոր Արամ Խաչատրյանը:

Աշխարհահռչակ կոմպոզիտորը և թխահեր, բարալիկ պատանին՝ հասունությունը և չամրապնդված նորաբողբոջ տաղանդը: Իսկ ի՞նչ նվագեց պատանին անվանի կոմպոզիտորի համար: «Սյուիտ» չորս մասից, «Պոեմ», «Ֆանտազիա» և «Քայլերգ»: Այդ բոլոր ստեղծագործություններն էլ Արամ Խաչատրյանը բարձր գնահատեց:

— Սյուիտը ես գրեցի Ջերմուկում, — պատմում է Արիկը: — Այնտեղ շատ գեղեցիկ էր, լեռները, ջրվեժները, ծաղիկները: Եվ երբ թռչում էինք այնտեղից Երևան, ինձ թվում էր, որ ինքնաթիռի շարժիչները ոչ թե հռնդում են, այլ երգում են. ա՛յ, այսպես: Ես կնվագեմ ձեզ համար, լա՞վ.

Եվ սենյակը լցվեց հրաշալի մեղեդիներով, մերթ մեղմ, մերթ փաղաքուշ, մերթ ըմբոստ:

Սյուիտի յուրաքանչյուր մասը Հայաստանի բնության յուրօրինակ մի կտոր էր, որ տեսել էր սեփական աչքով, շոշափել, հասկացել հարազատ երկրի գեղեկցությունը: Եվ այդ բոլորը զգում է տասը տարեկան պատանին, որ ինչպես մեր քաղաքի բոլո՛ր տղաները, հաճախում է դպրոց, պատրաստում դասերը, ֆուտբոլ խաղում: Բայց բավական է նա նստի դաշնամուրի առջև, անմիջապես մոռանում է ամեն ինչ՝ և՛ բակը, և՛ ֆուտբոլը:

Իհարկե, նա շատ երջանիկ է՝ երաժիշտ է ծնվել: Բայց դա միայն գործի կեսն է: Նրա հասունացման դժվարին ճանապարհին դեռ կլինեն շատ ուրախություններ և դառնություններ: Նրան սպասվում է քրտնաջան, համառ աշխատանք: Պետք է հուսալ, որ նա երբեք չի շեղվի այդ ճանապարհից և միշտ հավատարիմ կմնա իր կոչմանը:

Իբրև մշտական հիշեցում այդ մասին, դաշնամուրի կողքին դրված սեղանի ապակու տակ պահպանվում է ընծայագիր մի նոտաթերթ: Այն նվիրել է տղայի ղեկավարը, ուսուցիչն ու ավագ ընկերը՝ Հակոբ Զարգարյանը, սիմֆոնիկ նվագախմբի հետ նրա առաջին համերգի առթիվ.

«Սիրելի Արիկ, ես այսօր շընորհավորում եմ քո առաջին ելույթը նվագախմբի հետ: Նվագախումբը իհարկե փոքր է, դահլիճը նույնպես, բայց դու էլ ես դեռ փոքր: Ցանկանում եմ քեզ մեծ հաջողություններ:

Համոզված եմ, որ դու դեռ կնվագես մեծ դահլիճներում, մեծ նվագախմբերի հետ և ոչ միայն ուրիշ հեղինակների, այլև քո ստեղծագործությունները: Իսկ դրա համար, դու լավ գիտես, պետք է շատ ու շատ աշխատել: Եվ մի բան էլ, որ ավելի դժվար է, քան շատ աշխատելը՝ երբեք չմեծամտանաս: Ես հավատում եմ քեզ»:

Եվ ուսուցչի խոսքերն արդեն իրականանում են: Վերջերս Արիկը հանդես եկավ Թբիլիսիում: Նրա «Պոեմը» հնչեց Հայֆիլհարմոնիայի մեծ դահլիճի բեմից:

*Ի. ՍՈՎԵՐ*

**ԻՆՉՈՒԿ**

## ԱՄԵՆԱՄԵԾ ՆԿԱՐԸ

*Աշխարհի ամենամեծ նկարը պատկանում է նյու-յորքցի նկարիչ Բանվարդի վրձնին: Նկարի երկարությունը 4,8 կիլոմետր է: Այդ նկարի վրա նա սկսել է աշխատել 1840 թվականին: Բանվարդը 400 օր նավարկել է Միսսիսիպի գետով, ճեպանկարներ ու չափումներ անելով: Այնուհետև նա վեց տարի աշխատել է կտավի վրա, որտեղ պատկերել է «Միսսիսիպիի համայնապատկերը»՝ գետի ափերը ակունքից մինչև Նոր-Օրլեան: Նկարը հաճախակի ցուցադրվում էր ԱՄՆ-ում և Եվրոպայում, բայց հետո վաճառվեց մի անգլիացու: Սա նկարը տարավ Հնդկաստան, որտեղ էլ այդ արտառոց աշխատանքի հետքը կորավ:*






# ՊԱՐՏՎԱԾ

Երեխաներ, դուք պիտի զարմանաք այս վերնագրի համար։

Համբերեք, ես ձեզ կպատմեմ այն հայ երեխաների մասին, որոնք ապրում են հեռու-հեռու երկրներում, որոնք ձեզ նման ունեն հայր, մայր ու տատիկ, որոնք ձեզ նման գնում են դպրոց, սիրում են սովորել, բայց որոնք չեն հասկանում իրենց տատիկների լեզուն։

Դուք հասկանում եք ձեր տատիկների լեզուն և ձեր սովորած նոր բանաստեղծությունն եք արտասանում նրանց համար կամ երգում նոր սովորած հայերեն մի երգ։ Նրանք ձեզ օրհնում են, արևշատություն մաղթում։ Դուք հասկանում եք իրար։

Բայց ահա ես եղա Բրյուսելում, Լոնդոնում ու Փարիզում։ Հանդիպումներ ունեցա ձեր հասակակիցների հետ, նրանց տատիկների հետ, և ցանկացա, որ դուք տեղյակ լինեք նրանց կյանքին։

Այդ մեծ քաղաքների անունները թող ձեզ չզարմացնեն։ Կմեծանաք, մի օր դուք էլ կգնաք ու ձեր սեփական աչքերով կտեսնեք այդ քաղաքները և կկարոտեք, անպայման կկարոտեք Երևանին։

Բայց եկեք մենք գնանք Բրյուսել՝ Բելգիայի մայրաքաղաքը, ու հանդիպենք հայ երեխաներին։

Շատ խիտ բնակչություն ունի այս քաղաքը։ Մարդիկ ապրում են մեծ լարվածությամբ։

Այստեղ քիչ է հայերի թիվը։ Երևի ամբողջ Բրյուսելում հայերի թիվը հազիվ թե հասնի վեց հարյուրի։

Ոչ մի հայկական դպրոց չկա Բրյուսելում։

Ահա սա է պատճառը, որ թոռնիկները չեն հասկանում իրենց տատիկների լեզուն։

Ես եղա մի քանի հայ ընտանիքներում։ Զրույց ունեցա երեխաների հետ ֆրանսերեն լեզվով։ Նրանց անունները հայկական էին, բայց նրանք նույնիսկ չգիտեին, որ իրենք հայեր են։ Կոչվում էին Աշոտ, Հակոբ, Արամ, Համլիկ, բայց հայերեն չէին խմանում։

Այդ երեխաները զվարթ էին, սրամիտ ձեզ նման։ Բայց տխուր էին նրանց տատիկները։ Ես արցունք տեսա նրանց տատիկների աչքերում։ Նրանք չէին հասկանում ֆրանսերեն, թոռնիկները չէին հասկանում հայերեն։ Իրար հետ խոսում էին շարժումներով։

Լոնդոնը հսկա քաղաք է։ Թեմզա գետը երկու մասի է բաժանում այս ութ միլիոնանոց հսկան։

Այստեղ ապրում են չորսից-հինգ հազար հայեր։

Այս քաղաքը մշուշապատ է, բայց ունի սքանչելի պատկերասրահներ ու թանգարաններ։

Այս քաղաքում ապրել են մեծ բանաստեղծներ։ Բայրոնը, օրինակ, որ հայերեն էլ է սովորել, անցել է այս քաղաքի մայթերով։

Ես մի ընկեր ունեմ այս քաղաքում՝ Մանվել անունով։

Մանվելը երկու անուշիկ երեխաներ ունի, երկուսն էլ դպրոցական տարիքի՝ Մարալն ու Շողիկը։ Բայց Լոնդոնում էլ հայկական դպրոց չկա։ Այստեղ էլ երեխաները ստիպված գնում են անգլիական դպրոց ու սովորում այդ լեզուն։

Ես այդտեղ էի։ Մի օր Շողիկը տուն եկավ լաց լինելով։

Տատիկը գրկեց նրան.

—Ի՞նչ ունես, բալիկս։

Շողիկը լացակումած պատասխանեց.

—Դպրոցում ինձ հարցրեցին, թե ինչ ազգից եմ ես։ Պատասխանեցի՝ թե հայ եմ։ Ուսուցչուհին ինձ ասում է՝ սխալ բաներ մի՛ ասա, դու անգլուհի ես։ Երեխաները ծիծաղեցին ինձ վրա՝ «հայ», «հայ» ասելով։ Ես հա՞յ եմ, թե՞ անգլիացի։

—Հայ ես, բալիկ ջան,—ասաց տատիկը։—Տեսնում ես, ես հայ եմ, հայրիկը հայ է, մայրիկը հայ է, այս քեռին, որ եկել է Հայաստանից՝ հայ է, տեսնում ես՝ երկիր ունենք և որքա՜ն շատ ենք։

Շողիկը պոկվեց տատիկի գրկից ուրախացած։

Իսկ տատիկը լաց էր լինում։

Փարիզի մասին շատ եք լսել։ Գեղեցիկ քաղաք է Փարիզը։ Այստեղ է ձեզ ծանոթ Էյֆելյան աշ-

# Տ Ա Տ Ի Կ Ն Ե Ր

*տարակը։ Այստեղ է Կոմունարների պատը։ Այստեղ է թաղված հայոց վերջին թագավոր Լևոն VI-րդ Լուսինյանը։ Փարիզում է մարտնչել Ֆրանսիայի հայ հերոս բանաստեղծ Միսաք Մանուշյանը։*

*Ես այստեղ նույնպես շատ ծանոթներ ունեմ։*

*Այս քաղաքում կան հայերեն լեզվով լույս տեսնող լրագրեր, ամսագրեր։ Բայց այդ թերթերի ընթերցողները, մի՛ զարմացեք, եթե ասեմ, որ տատիկ-պապիկներ են ու տարեց մարդիկ ընդհանրապես։ Ինչո՞ւ։ Որովհետև թեև այստեղ կան հայկական դպրոցներ, բայց քիչ է դրանց թիվը։ Եղածներն էլ կիրակնօրյա դպրոցներ են։ Հայ երեխան շաբաթը մի օր հայկական դպրոց գնալով չի կարող իր մայրենի լեզուն սովորել։*

*Այստեղ էլ տատիկներն ու թոռները իրար լավ չեն հասկանում։*

*Փարիզում գնացել էի մի բարեկամի տուն։*

*Նրանք հրճվանքով լսում էին Հայաստանի երեխաների մասին, նրանց ուսումնասեր լինելու մասին, հայ երգն ու խոսքը սովորելու մասին իմ պատմածները ու երբեմն տխրում էին, մտածելով իրենց թոռների մասին։*

*Ահա Աշխեն տատիկը ներկայացնում է իր թոռնիկին.*

*—Բալիկիս իմ անունով կոչել են Աշխեն։*

*Ուրախ է տատիկը, որ իր անունը շարունակվում է։*

*Բայց ահա ես մոտենում եմ Աշխենիկին, համբուրում իր կարմիր թուշիկը և ասում.*

*—Աշխենիկ ջան, ո՞նց ես։ Ասա տեսնեմ, Աշխենիկ ջան, ո՞նց ես։*

*Նա լռում է ու լռում։*

*Չեմ հուսահատվում։ Ասում եմ՝ Աշխենիկ ջան, ասա՝ լավ եմ։*

*Վերջապես խոսում է Աշխենը. և գիտե՞ք ինչ է ասում.*

*-Աշխենիկ ջան, ասա՝ լավ եմ։*

*Ես նոր եմ գլխի ընկնում, որ Աշխենիկը, հակառակ տասը տարեկան լինելուն, հայերեն չի իմանում։*

*Աշխեն տատիկը լաց է լինում։*

*—Հողից հեռու, Հայրենիքից հեռու բոլորս պարտված ենք,—ասում է,—պարտված ենք, հային միայն իր հողը կփրկի, մեռնեմ այդ սուրբ հողին, մեռնեմ Հայաստանի հողին։*

*Ես չկարողացա մխիթարել նրան։*

ԹՈՐՈՍ ԹՈՐԱՆՅԱՆ

## ԴԵՊՔԵՐ ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՅԱՆՔԻՑ

* * *

Անբուժելի հիվանդ Հայնրիխ Հայնեն աշխատեց մինչև իր կյանքի վերջին օրը։ 1856 թվականի փետրվարի 13-ին՝ իր մահից չորս օր առաջ, պոետն ասաց, որ իր հիշատակարանը վերջացնելու համար իրեն անհրաժեշտ է ընդամենը չորս օր, ու սկսեց աշխատել օրական վեց ժամ։ Եվ իսկապես, նա իր ձեռագրերը համարյա լրիվ ավարտեց։ Փետրվարի 16-ին պոետը թուղթ և մատիտ խնդրեց։ Սակայն մատիտը ընկավ նրա ձեռքից... ընդմիշտ։

### ԱՆԳԼԵՐԵՆ՝ ՀՈՒՆԳԱՐԵՐԵՆԻ ՊԵՍ

Երբ ամերիկացի ժամանակակից ֆիզիկոս Լեո Սցիլարդուն պետք է իր առաջին գիտական զեկուցումը կարդար, մի պահ վարանեց. ո՞ր լեզվով զեկուցեր։ Բանն այն է, որ Սցիլարդուն ծնունդով հունգարացի էր և նրա մայրենի լեզուն հունգարերենն էր։ Սակայն ի հարգանք ունկնդիրների (դահլիճում նըստած էին հիմնականում ամերիկացիներ) նա ընտրեց անգլերենը, թեև վատ գիտեր այն։ Զեկուցումը ուշադրությամբ լսեցին, իսկ երբ ավարտվեց, Սցիլարդուին մոտեցավ մի գիտնական ու հարցրեց.

— Լեո, ի՞նչ լեզվով էիք զեկուցում։

— Հունգարերեն,—իրեն չկորցնելով պատասխանեց Սցիլարդուն։ —Մի՞թե դուք այդ լեզուն չգիտեք։

— Ո՛չ, ո՛չ, ես հունգարերեն հասկանում եմ,— ասաց զրուցակիցը,— բայց ինչու՞ էիք այդքան անգլերեն բառեր խցկել նրա մեջ։

**ԻՆՉՈՒԿ.**



## ԱՐՏԱՍՈՎՈՐ ՀԱՎԱՔԱԾՈՒ

*Ոմանք դրոշմանիշներ են հավաքում, ոմանք՝ թիթեռներ, իսկ արգենտինացի Դիեգո դը Էնրիկեսը հավաքում է հին կամ պարզապես հնացած վենքեր: Նրա ընդարձակ հավաքածուում կան չորս սուզանավ, երեք զրահագնացք, երկու հարյուր թնդանոթ, տասը հազար սուր, դաշույն և հրացան, մեծ քանակությամբ ռազմական այլ հանդերձանք, ինչպես նաև տասնութ հազար կտոր ռազմական գրականություն և ութ հազար մարտի տեսարաններ պատկերող լուսանկարներ:*

## ԱՆՀԱՏԱԿ ԱՆՑՔԸ

*Ադրիատիկ ծովում, Կաֆալեմ կղզու արևմտյան ծովափի մոտ գիտնականները ծովի հատակում անցք հայտնաբերեցին: Հաշվել են, որ յուրաքանչյուր օր այդ անցքով կորչում է 30 հազար տոննա ջուր: Ներկերի և պլաստիկատի մանր կտորների օգնությամբ փորձեցին պարզել, թե որտեղից է ջուրը նորից լույս աշխարհ գուրս գալիս: Անցքով բաց թողեցին 130 կգ փորձանյութ: Սակայն մինչև այսօր չի ստացվել ոչ մի արդյունք: Խորհրդավոր անցքը շարունակում է ամուր պահել իր գաղտնիքը:*



Մեր բակում կատուներ շատ կան: Նրանցից երկուսը հարազատ եղբայրներ են՝ ճերմակ են, մեկի պոչը և ականջները սև են, իսկ մյուսինը՝ շագանակագույն: Երկուսն էլ շատ են իրար նման: Սևապոչ կատվի աչքերը դեղին են, շագանակագույն պոչավորի աչքերը՝ խաժ: Հերիքնազ տատիկն ասում է, որ դեղին աչքերով կատուները մուկ չեն բռնում, իսկ խաժ աչքերով կատուները լավ որսորդներ են: Սևապոչ կատուն գիշեր-ցերեկ քնած է, ծույլ է և մարդկանց չի սիրում: Շագանակագույն պոչովը ճիշտ նրա հակառակն է՝ մարդասեր ու անհանգիստ:

Այսպես ապրում են նրանք մեր բակում մնացած հին տների տանիքների տակ, ապրում են քանի դեռ ցուրտ չէ, իսկ երբ ցրտերն ընկնեն, կհավաքվեն վառարանների ծխնելույզների շուրջը, կընտրեն տանիքներից ամենահարմարը՝ փակը: Այս երկու եղբայրները մի մոխրագույն քույրիկ ունեն, անունը՝ Մոխրոտ, որովհետև աչքերը ոչխարի աչքերի գույն ունեն: Մոխրոտը երկու ձագ ունի: Ձագերին պահում է հին տներից մեկի տանիքի տակ: Հերիքնազ տատիկն ասում է, որ Մոխրոտը սքանչելի մայր է՝ ձագերն առողջ են և կայտառ: Նա գիշեր ու ցերեկ մտածում է միայն նրանց մասին: Այդ ճիշտ է, մենք անգամ տեսնում ենք նրա հոգատարությունը: Մաքրասեր, ուշադիր կատու է Մոխրոտը: Տատիկը երբեմն նրան մսի կտորներ է տալիս, գովում է խելքն ու շնորհքը:

— Այսպիսի կատուներ քիչ են լինում: Լավ կատու է,—այնքան է ասել Հերիքնազ տատիկն այդ մասին, որ մենք էլ ակամայից հետաքրքրվում ենք նրանով:

Եվ ահա, մի օր էլ տիկին Վերգինեն՝ մեր երիտասարդ հարևանուհին, բողոքում է Հերիքնազ տատիկին:

— Զարմանալի բան է,—ասում է նա,—երեխաս ուտում է, ուտում և չի կշտանում կաթից, սոված է մնում, լաց է լինում, և հետո, չեմ հասկանում, բոլոր ծծակները ծակվում կամ պատռվում են:

Տատիկը հանգստացրեց տիկին Վերգինեին և դրանով էլ երևի ամեն ինչ կվերջանար, եթե օրերից մեկ օր աչքովս չտեսնեի այն, ինչ որ տեսա: Զարմանք պատեց ինձ, եթե ասեին՝ չէի հավատա:

Տիկին Վերգինեն կաթի սրվակին ծծակ էր հագցնում: Լսվում էր երեխայի ձայնը՝ լալիս էր: Հետո նա տուն մտավ, երևի ծծակը դրեց երեխայի բերանը, երեխան լռեց: Ապա նորից դուրս եկավ ու գնաց իր գործին:

— Ծծում է,—ասաց նա Հերիքնազ տատիկին,—կշտանա՝ կքնի:



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# ՀԵՐԻՔՆԱԶ ՏԱՏԻ ՄՈԽՐՈՏԸ

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

Այդ օրը մի քանի անգամ սրվակը լցվեց կաթով, բայց երեխան չէր հանգստանում:

— Երևի փորիկն է ցավում. Վերգինե, մի քիչ ձեթ տաքացրու. բերանը լցրու, թող հանգստանա:

Այնքան շատ լաց եղավ երեխան, որ մենք էլ հետաքրքրվեցինք, դուրս եկանք պատշգամբ: Եվ այդ ժամանակ էր, որ ես տեսա զարմանալին. Մոխրոտը դուրս թռավ տիկին Վերգինեի սենյակի պատուհանից՝ կաթով լի սրվակը բերանին: Զգուշությամբ վար ցատկեց պատուհանի գոգից, բարձրացավ հին տան տանիքն ու անհետացավ: Քիչ հետո ես լսեցի նրա՝ մեղմ մռմռոցը և ձագերի մըլավոցը: Մոխրոտը փախցրել էր երեխայի կաթը իր ձագերի համար: Հերիքնազ տատիկը նայեց ինձ, խորամանկ աչքերը կկոցեց ու ժպտաց: Ինչպես երևում էր, նա արդեն վաղուց էր նկատել այդ բանը:

— Տե՛ս, չասես, հարևան,— զգուշացրեց նա ինձ և հիացմունքով շարժեց գլուխն այն պահին, երբ Մոխրոտը դուրս եկավ հին տան կտուրի տակից՝ արդեն դատարկ սրվակը բերանին: Կատուն նորից ներս ընկավ սենյակը և այս անգամ դուրս եկավ այնտեղից դատարկ: Նա սրվակը ներս տարավ, որ նորից լցնեն:

Այդ օրը տատիկն ինձ շատ բաներ պատմեց կատուների մասին: Ինչպես երևում էր, նա կատուներ շատ էր սիրում.

— Լավն է, շատ լավն է անպիտան Մոխրոտը: Իսկական մայր է, եթե իմ տունը մտնի, ես հաճույքով կպահեմ նրան ու իր ձագերին:

Բայց Մոխրոտը տուն չէր մտնում, նա արդեն սովորել էր դրսի կյանքին. ձագերին կտուրների տակ էր մեծացնում:

Այդ դեպքը շատերը տեսան ու իմացան: Հարևանները մսի կտորներ էին գցում նրան, իսկ Հերիքնազ տատիկը մի աման էր դրել պատշգամբի սյունի տակ և ամեն օր կաթ էր լցնում մեջը, որ Մոխրոտը խմի: Եվ այդպես էլ լինում էր: Մոխրոտը գալիս էր՝ հանգիստ ու հպարտ, լիզում էր կաթը, թաթերը թափ էր տալիս, դունչը լվանում, մեջքն ուռեցնում, քսում էր տատի ոտքերին, հանգիստ ու վեհ հեռանում, մտնում տանիքի տակ: Երբ արև էր լինում, նա դուրս էր գալիս տանիքի տակից ու եղբայրների հետ պառկում արևի տակ տաքանալու: Տաքանում, մեղմ ու քաղցրալուր մռմռոցով լցնում էր մեր բակը: Հերիքնազ տատիկը բավականությունից փակում էր աչքերը:

— Ես շատ եմ սիրում կատվի մռմռոցը,— ասում էր նա,— մայրիկիս եմ հիշում: Մի մեծ կատու ունեինք՝ կպառկեր մայրիկիս ոտքերի տակ և ամ-

բողջ գիշերը կմռմռացներ։ Եթե Մոխրոտը տուն գա, ես նրան ձմեռը կպահեմ, ձագերին կմեծացնեմ։

Բայց այնպես եղավ, որ Մոխրոտը մի օր էլ մըտավ տիկին Վերգինեի պատուհանից ներս ու այլևս դուրս չեկավ։ Այդ երեկո մենք առաջին անգամ լսեցինք Մոխրոտի ձագերի ձայնը՝ լալիս էին։ Հաջորդ օրը տատիկը երեխաներին խնդրեց բարձրանալ կտուրը, ձագերին հանել և տուն բերել։ Ձագերը երկուսն էլ մոր նման մոխրագույն էին, մոր աչքերն ունեին և հարթ ու գեղեցիկ մազերը։ Հերիքնազ տատիկը նրանց տուն տարավ, իսկ մեկ օր հետո իմացանք, որ տիկին Վերգինեն տեսել է, թե ինչպես է Մոխրոտը երեխայի կաթը գողանում, ասել է ամուսնուն, և ամուսինը բռնել է Մոխրոտին, գցել մի պարկի մեջ ու տարել Արինջ գյուղում բաց թողել։

Հիմա աշուն է, օրերը ցրտել են։ Սև ու շագանակագույն քերիների հետ արևի տակ տաքանում են նաև Մոխրոտի ձագերը։ Նրանք էլ իրենց մոր նման մռմռալ գիտեն և լցնում են մեր բակը հաճելի մռմռոցով։ Իսկ տատիկը, Հերիքնազ տատիկը Արինջից եկած լոբի ծախողներին հարցնում է.

— Դուք չե՞ք տեսել մեր Մոխրոտին,— նկարագրում է նրան, պատմում է նրա մասին, գովում է նրա խելքն ու շնորհքը։

— Եթե տեսնենք տուն կտանենք,—խոստանում են նրանք ու գնում։

— Գարունը գա, ես ինքս կգնամ նրան տեսնելու,—ասում է Հերիքնազ տատիկը և դրանով հանգստանում։



# ԿԵՆԴԱՆԻ

Հետաքրքրասեր, բնությունը սիրող մարդու համար, որը կարող է ոչ միայն նայել, այլև տեսնել, ոչ միայն լսել, այլև ըմբռնել, անտառում անսահման անելիքներ կան։ Սակայն ինչ նպատակով էլ որ գնաս անտառ, քեզ հարկավոր է կողմնացույց, բարոմետր և ժամացույց։ Իսկ այ, եթե քեզ մոտ բարոմետր չկա, բայց անհրաժեշտ է իմանալ եղանակը՝ ինչպե՞ս վարվել։ Շատ պարզ։ Անտառում յուրաքանչյուր քայլափոխին հանդիպում ես կենդանի բարոմետրի։ Հարկավոր է միայն տեսնել այն։ Դրանք ծաղիկներն ու ծառերն են, միջատներն ու թռչունները։ Նրանք զգում են ամեն ինչ, նույնիսկ օդի խոնավության ու ճընշման ամենաչնչին փոփոխությունը։ Դրան նրանք արձագանքում են յուրովի։

Հսկիր դաշտային պատատուկին, մանուշակին, երեքնուկին։ Նրանք քեզ կպատմեն՝ անձրև կլինի, թե ոչ։ Հետևիր ակացիային, չէ՞ որ նա նույնպես բարո-

## ԴԵՊՔԵՐ ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՅԱՆՔԻՑ



### ԷԴԻՍՈՆԻ ԱՌԱՋԻՆ ԳՅՈՒՏԸ

Էդիսոնը իր առաջին գյուտի մասին այսպես էր պատմում.

—Մի անգամ, երբ ես դեռ պատանի էի, թերթերում կարդացի, որ մի կողոպտված բանկիր որոշել է դրամապահարանները հաճախակի կողոպուտից փրկելու որևէ միջոց գտնել։ Մի քանի րոպեից ես արդեն կանգնած էի այդ բանկիրի մոտ։

— Պարոն,— ասացի ես,—հենց նոր ես մի սարք հնարեցի, որի միջոցով դուք ամենակարճ ժամանակամիջոցում կհայտնաբերեք բոլոր նրանց, ովքեր կըփորձեն մտնել ձեր բանկի դրամապահարաններին։

— Եվ որքա՞ն եք գնահատում ձեր գյուտը,—հարցրեց բանկիրը։

— Ձեր աղջկա ձեռքը,— անհամարձակ ասացի ես։

— Ոչ, դա անհնար է, սակայն երբ ապացուցեք ձեր գյուտի ճշտությունը, ես առաջարկում եմ 10 հազար դոլլար։

Ես համաձայնեցի և երկու օրից այցելեցի բանկիրին, որին անկողնում պառկած գտա։

— Պարոն,—ասացի ես,—երեկ գիշեր դուք փորձել եք բանալ դրամապահարանը։ Բայց դեռ կողպեքին ձեռք չտված՝ էլեկտրական հոսանքը խփել է ձեզ, ճիշտ է, թեև թույլ, սակայն դա էլ բավական էր, որ ձեզ գետին տապալեր։ Այ, հենց դա էլ իմ գյուտն է։ Ով որ բանկը փակվելուց հետո ձեռք տա դրամապահարանին, էլեկտրական հոսանքը կխփի նրան այնպես, որ մինչև հայտնաբերվելը գիտակցությունը կորցրած պառկած կմնա։

# ԲԱՐՈՄԵՏՐԵՐ, ԿՈՂՄՆԱՑՈՒՅՑՆԵՐ

մետր է: Անձրևից առաջ նրա ծաղիկները մեծ քանակությամբ նեկտար են արտադրում: Իսկ դեպի նեկտարը թռչում են միջատները: Ուշադիր նայիր. եթե դեպի ակացիան միջատներ են թռչում՝ անձրև կլինի: Միջատներ չկան՝ սպասիր լավ եղանակի: Այս նույն ձևով էլ եղանակը կանխագուշակում է ցախկեռասը:

Եղանակի շատ «կանխագուշակներ» կան և միջատների մեջ: Եթե բզեզը երեկոյան թռչում է անտառային կածաններով, ապա վաղը սպասիր լավ եղանակի, նույնիսկ, եթե այդ րոպեին երկինքը պատած է ամպերով և անձրև է մաղում: Բզեզ չկա, թեկուզ նույնիսկ հիմա հիանալի եղանակ լինի, նշանակում է շուտով սպասիր մռայլ, անձրևային եղանակի:

Դու, երևի լսել ես, որ ծիծեռնակները նույնպես եղանակի գուշակներ են: Եթե նրանք բարձր են թռչում՝ լավ եղանակ կլինի, ցածր՝ կլինի անձրև: Շատերը կարծում են, որ թռչունները անձրևային եղանակի նախազգացման ժամանակ իջնում են գետնին ավելի մոտ: Իսկապես, ներքևում, գետնի մոտ թռչում են միջատները, որոնց թևերը խոնավությունից ուռած և ծանրացած են: Իսկ միջատների ետևից իջնում են և ծիծեռնակները. չէ՞ որ նրանք միջատներին որսում են թռչելիս: Լավ եղանակին օդը գետնից բարձրացնում է միջատներին ու նրանց տանում դեպի վեր: Ծիծեռնակներն էլ բարձրանում են նրանց ետևից: Սակայն միջատները չեն երևում, իսկ ծիծեռնակները լավ են նկատվում: Այդ պատճառով էլ նախանշանը կապում են ոչ թե միջատների, այլ թռչունների հետ:

Եղանակը «կանխագուշակող» կենդանի բարոմետրերը բազմաթիվ են: Միայն կենդանիներից հայտնի են մոտ վեց հարյուրը:



Բայց դեռ որքա՜ն էլ անհայտ են: Քեզ համար էլ, այստեղ, աշխատանքի առատություն է: Կարելի է գտնել նոր «կենդանի բարոմետրեր», ստուգել արդեն հայտնիները: Իհարկե, այն բոլորը, ինչ որ կտեսնես դու, հարկավոր է գրանցել. թե ինչպես էր պահում իրեն «բարոմետրը» անձրևից կամ լավ եղանակից առաջ, եղանակի փոփոխվելուց որքան ժամանակ հետո դու նկատեցիր կենդանու կամ բույսի վարվելակերպի փոփոխությունը, որտեղ դու տեսար այդ «բարոմետրը»: Սակայն հիշիր, որ շատ հեշտությամբ դու կարող ես սխալվել: Հանկարծակի փոփոխություն կտեսնես կենդանու կամ բույսի վարվելակերպի մեջ, պատահական զուգադիպություն, և այն կընդունես որպես «կանխագուշակություն»: Որպեսզի այդ չըպատահի, յուրաքանչյուր բարոմետրը պետք է ստուգել մի շարք անգամ:

Իսկ հիմա պատկերացրու, որ դու գնացել ես անտառ, սունկ հավաքելու և հանկարծ մոլորվել ես: Իսկ կողմնացույց չունես: Ի՞նչ անել: Բայց չէ՞ որ անտառում, քո շրջապատում, ոչ միայն շատ բարոմետրեր կան, այլև բազմաթիվ կողմնացույցներ:

Ահա քո առջև կանգնած է ծառը: Նրա կեղևը ծածկված է մամուռով ու մկնատամով: Ուշադիր նայիր, և կտեսնես, որ ճյուղի մի կողմում մամուռը և մկնատամն ավելի խիտ են աճել: Նրանք արև չեն սիրում, չեն սիրում տաքություն: Իսկ հյուսիսային մասը, պարզ է, միշտ ստվերոտ է: Նշանակում է, այնտեղ, որտեղ մամուռն ու մկնատամը խիտ են՝ հյուսիսն է: Ծառը պետք է ընտրել որևէ բացատում, և ոչ թե անտառային թավուտում:

Բայց այդպես կարելի է կողմնորոշվել խառը կամ սաղարթավոր անտառներում: Իսկ եթե դու մոլորվե՞լ ես փշատերև անտառում,



որտեղ մամուռն ու մկնատամը ամեն կողմից գրեթե հավասարապես են պատում ծառերի ճյուղերը: Որոշել, թե սոճու և եղևնու կեղևի ո՞ր կողմն է կոպիտ, այնքան էլ հեշտ չէ: Այնուամենայնիվ նայիր ծառերի ճյուղերին: Գրեթե բոլորի վրա փայլում են խեժի կաթիլներ: Բայց խեժի թանձրությունն ու հոսքն ամեն կողմից միատեսակ չէ: Առավելապես

հոսքն այն կողմից է, որը լավ է լուսավորված արևով, այսինքն՝ հարավայինը: Եթե ամպամած, խոնավ եղանակ է, խեժի հոսքը քիչ է: Սակայն դրա փոխարեն ծառի մի կողմում (այդ բանը առանձնապես լավ է երևում սոճու վրա) գետնից գրեթե մինչև կատարը ձգվում է մուգ գույնի շերտ: Այն առաջանում է խոնավության դադարումից: Անձրևի ժամանակ, կեղևը, իհարկե, թրջվում է ամբողջովին, բայց չորանում է ոչ հավասարապես. հյուսիսային կողմում արևը քիչ է, և այդ շերտը երկար է պահպանվում: Նշանակում է, հյուսիսն այն կողմում է, որ կողմում երևում է շերտը:

Մրջյունները նույնպես կարող են ծառայել որպես ճշգրիտ կողմնացույցներ: Այսինքն, ոչ թե մրջյունները, այլ մրջնանոցները: Մրջնանոցները հաճախ գտնվում են ծառերի, կոճղերի կամ թփերի մոտ: Եվ քանի որ մրջյունները մոխրի, արևի մեծ սիրահար են, այդ իսկ պատճառով էլ նրանք իրենց կացարանները միշտ «կառուցում» են ծառի կամ կոճղի հարավային մասում: Սակայն, եթե մրջնանոցը տեղավորված է ոչ ծառի մոտ, միևնույն է, այն քեզ կարող է հուշել, թե որտեղ է գտնվում հարավը, որտեղ հյուսիսը. մրջնանոցի հարավային կողմը միշտ ավելի զառիվայր է, քան հյուսիսայինը:

Հազարավոր հետաքրքիր հայտնագործություններ, բազմաթիվ հրապուրիչ գործեր են քեզ սպասում անտառում, մարգագետնում, բացատում, առվի ափին: Բնության գաղտնիքները գուշակելու, հայտնագործություններ կատարելու համար անհրաժեշտ չէ մեկնել աշխարհի ծայրը, փնտրել ինչ-որ խուլ, հեռավոր երկրամաս, հետաքրքիրը, զարմանալին կողքիդ է:




## ԿԵՆԴԱՆԻՆԵՐ, ՈՐՈՆՑ ՄԵՆՔ ԱՅԼԵՎՍ ՉԵՆՔ ՏԵՍՆԻ

Երբ Ամերիկայի տափաստաններում, Աֆրիկայի և Ավստրալիայի անտառներում ու սավաննաներում իրենց մահաբեր զենքերով հայտնվեցին եվրոպացիները, կուսական բնության գլխին կախվեց ոչնչացման վտանգը: Սկսվեց վայրի կենդանիների մասսայական, մեծ մասամբ անիմաստ ջարդը: Մեկը մյուսի հետևից սկսեցին երկրի երեսից անհետանալ ոչ թե երամներ ու երամակներ, այլ կենդանիների ամբողջ տեսակներ: Միայն վերջին հարյուրամյակում երկրի երեսից չքացել է կենդանիների մոտ 70 տեսակ: Ընդամենը վերջին երկու հազարամյակի ընթացքում ոչնչացվել է խոշոր կաթնասուն կենդանիների 106 տեսակ և 139 թռչնատեսակ:

Այդ դեռ քիչ է: Կենդանիների և թռչունների մոտ 600 տեսակ անհետ կորչելու վտանգի տակ է այսօր:

## «ԴՐՈՆՏԻ ՆՄԱՆ ՄԵՌԱԾ»

Փորթուգալացի Պետրո Մակարենեսը 1507 թվականին Հնդկական օվկիանոսում հայտնաբերեց կղզիների մի արշիպելագ, որն հետագայում կոչվեց նրա անունով: Հնդկաստանի ճանապարհին հարմար կայաններ լինելով, այդ արշիպելագի կղզիները շուտով լցվեցին բախտախնդիրների բազմությամբ: Անցնող նավերն այստեղ լրացնում էին սնունդի իրենց պաշարը, և շուտով ոչնչացվեցին արշիպելագի բոլոր կենդանիները: Քաղցած նավաստիները նախ խժռեցին կրիաներին, ապա սկսեցին ոչնչացնել դրոնտներին: Հոհռալով նրանք բռնում էին անպաշտպան, գեր ու դանդաղաշարժ թռչուններին, որոնց կարճ թևերը, իհարկե, նրանց ծանր մարմինները օդ բարձրացնել չէին կարող:

Տասնութերորդ դարի վերջերին բոլոր դրոնտները ոչնչացվեցին: Մի քանի խղճուկ ոսկոր, պատկերը հոլանդական նկարիչների կտավներում և մեկ էլ «դրոնտի նման մեռած» արտահայտությունը՝ ահա թե ինչ է մնացել այսօր այդ զարմանահրաշ թռչուններից:



## ՏԻԿ ՀԱՆԱԾ ՁԻԵՐ

1812 թվականին, երբ բոլոր դրոնտներն արդեն ոչնչացված էին, բնագետ Բուրչելը Հարավային Աֆրիկայում տարօրինակ ձիերի մի երամակ տեսավ։ Այդ ձիերին շուտով դրոնտների դառը ճակատագիրը վիճակվեց։ Դրանք կվագներ էին, մուգ դարչնագույն զեբրեր, որոնց գլխի և պարանոցի վրա իրարից հեռու ընկած շերտեր կային։

Բուրերը՝ Աֆրիկա տեղափոխված հոլանդացիները, սկսեցին անխնա ոչնչացնել կվագներին։ Նրանց անհրաժեշտ էին կվագների մորթիները՝ տիկ պատրաստելու համար։ Արդյունքն



այն եղավ, որ կվագները դարձան հնէաբանական թանգարանների ցուցանմուշներ։ Վերջին կվագը մեռավ 1883 թվականին Ամստերդամի կենդանաբանական այգում։

## ԵՐԵԿ «ՆՈՐԱԾԻՆՆԵՐ», ԱՅՍՕՐ ԲՐԱԾՈ

Նույն բախտը վիճակվեց նաև ասիական եղջերուի երկու տեսակի։ Դավթի եղջերուն, կամ միլուն հայտնաբերվեց 1865 թվականին։ Հիմա այդ եղջերուն անտառներում գլխովին ոչնչացված է։ Մի քանի տասնյակ միլուներ ապրում են միայն Պեկինի ամառային պալատի պարկում և Եվրոպայի կենդանաբանական այգիներում։

1863 թվականին հայտնաբերված Շոմբուրկի եղջերուները նույնպես ոչնչացված են։

Ո՞վ չի լսել պարկավոր գայլերի մասին, որոնք ապրում էին Թասմանիա կղզում։ Պարկավոր գայլերին որսալու համար այստեղ էին գալիս շատ երկրների տուրիստներ և որսորդներ։ Արդյունքն այն եղավ, որ մեր դարի սկզբին պարկավոր գայլեր մնացել էին միայն լեռնային անմատչելի անտառներում։ Իսկ վերջին անգամ պարկավոր գայլի հետքեր տեսել են միայն 1948 թվականին։ Այդ հետաքրքրական գայլին այլևս ոչ ոք չի հանդիպել, որովհետև նույնիսկ կենդանաբանական այգիներում պարկավոր գայլ չի պահպանվել։

## ՓՐԿԵՑԵՔ ԿԻՎՈՒՅԻ «ԾԵՐՈՒԿԻՆ»



1903 թվականին կենդանաբան Մաչին զարմանքով դիտում էր կապիկի մի մորթի, որ նրա համար բերել էին Աֆրիկայի Կիվու լճի ափերից։ Դա նշելայի՝ լեռնային գորիլայի մորթի էր։

Սովորական գորիլաները եվրոպացիներին լավ հայտնի էին դեռևս անցյալ դարի կեսերից։ Սովորական գորիլաներն ապրում են Գաբոնում և Կամերունում։ Ոչ ոք չէր կարծում, թե Կենտրոնական Աֆրիկայում կարող են ապրել շատ ավելի խոշոր գորիլաներ։ Լեռնային գորիլայի հասակը հասնում է երկու մետրի, նրա թևերի բացվածքը 2 մետր 10 սանտիմետր է։

Առաջին համաշխարհային պատերազմից հետո տուրիստներն ու որսորդները, որոնք հեղեղում էին Կենտրոնական Աֆրիկան, երազում էին ոչ միայն անտիլոպի եղջյուրներ, այլև կիվուցի «ծերուկի» գանգամաշկը ձեռք բերելու մասին։ Եվ լեռնային գորիլան ենթարկվեց ամենաանխիղճ ոչնչացման։

Վերջերս միայն Միկենո և Կարիսիմբի լեռների լանջերում ստեղծվել են արգելանոցներ, որոնք, հույս կա, թե այդ զարմանալի չորքոտանիներին կփրկեն անհետացումից։

## ԱՆՕՐԻՆԱԿ ԿՈՏՈՐԱԾ

*Մինչև եվրոպացիների հայտնվելը, Ամերիկայում 60 միլիոն բիզոն կար։ Անցյալ դարի վերջերին մնացել էր միայն հազար բիզոն։ Միայն անցյալ դարի յոթանասունական թվականների երեք տարում հինգ ու կես միլիոն բիզոն ոչնչացվեց։ Աշխարհի ոչ մի երկիր կենդանիների այդպիսի անիմաստ և հրեշավոր ջարդ չի տեսել։ Հաճախ բիզոն էին սպանում, որպեսզի նրանից մի կտոր միս կտրեն միայն նախաճաշի համար։ Պատմում են, որ մի անգամ երկաթուղու շինարարները մեկ ու կես հազար բիզոն են սպանում, որոնց միայն լեզուներն են կտրում և փոխանակում օղու հետ։*

*Եվ եթե չլիներ Թափառաշրջիկ Կոյոտ անունով մի հնդկացի, ապա, երևի, բիզոններն էլ անհետ կորչեին։ Նա մի զույգ երիտասարդ բիզոն բռնեց և պաշտպանեց բախտախնդիրներից։ Քսան տարի հետո նրա նախիրում բիզոնների թիվը հասավ երեք հարյուրի։ 1902 թվականին Ամերիկյան կառավարությունը Թափառաշրջիկ Կոյոտից գնեց բոլոր բիզոնները՝ կենդանաբանական այգիների ու արգելանոցների համար։*



# ԻՆՔՆԱՍՊԱՆ ԿԵՏԵՐԸ

Դեռ մի քանի տարի առաջ պարզ չէր, թե ինչու են կետերը և դելֆինները ափ նետվում: Սովորաբար նրանք վախենում են ափին մոտենալուց, որովհետև դա շատ վտանգավոր է նրանց համար: Եթե կետերը կամ դելֆինները հայտնվում են ծանծաղուտներում, ապա մեծ դժվարությամբ է հաջողվում նրանց ետ գնալ դեպի բաց ծովը: Իսկ եթե «նստում» են հատակին, այդ դեպքում արդեն փրկություն չի լինում, քանի որ իրենց մարմնի ծանրությունից այնպես են ճնշվում նրանց թոքերը, որ շնչելն անհնար է դառնում:

Սակայն ինչո՞ւ երբեմն դելֆինների մի ամբողջ վտառ, այնուամենայնիվ, ափ է դուրս գալիս և ոչնչանում:

Հոլանդացի գիտնական Դուդոկ Վան Հիլը տարիներ շարունակ ուսումնասիրում էր հատկապես այդ հարցը: Նա պարզեց, որ կետերը և դելֆինները ափ են դուրս գալիս միշտ միևնույն տեղերում:

Դուդոկը սկսեց ուսումնասիրել այդ տեղերը: Եվ պարզեց, որ այդ բոլոր տեղերը իրար նման են: Այնտեղ որտեղ դելֆինները ափ են դուրս գալիս, ափը սկսվում է աստիճանական թեքությամբ:

Արդեն հայտնի էր, որ դելիֆինները ջրի տակ ուլտրաձայներ են արձակում, որոնք մարդը չի լսում: Հետագայում պարզվեց, որ դելֆինները լողալիս միշտ ձայնալիքներ են ուղարկում, և եթե առջևում որևէ պատնեշ կամ խոչընդոտ կա, ստանում են ձայնի անդրադարձումը: Ասենք, օրինակ, դելֆինը լողում է գիշերը ժամում 15 30 կմ. արագությամբ, 50 մետր խորության վրա, որտեղ կարող է բախվել ստորջրյա ժայռերի: Սակայն դա տեղի չի ունենում, ձայնի անդրադարձումը նախազգուշացնում է նրան: Իսկ եթե անդրադարձում չի ստանում, հանգիստ կերպով առաջ է լողում:



Բայց, եթե ծովի հատակը ափ է դուրս գալիս աստիճանական թեքությա՛մբ: Այժմ նայեցեք գծագրին: Ֆիզիկայի օրենքի հիման վրա, անկման անկյունը հավասար է անդրադարձման անկյանը, դա բնորոշ է ոչ միայն լուսային ալիքների, այլև ձայնային ալիքների համար:

Հետևապես, երբ դելֆինների և կետերի ձայնալիքները դիպչում են զառիվայր հատակին, անդրադարձումը ետ չի վերադառնում, այլ դուրս է գալիս օդ: Իսկ դելֆինները, չստանալով իրենց ազդանշանի պատասխան արձագանքը, հանգիստ կերպով առաջ են լողում, և երբ մարմնով հպվում են ափի հատակին, այլևս չեն կարողանում կասեցնել իներցիայի ուժը և դուրս են նետվում ափ ու ոչնչանում:



*Երեխաներ, դուք շատ եք լսել Հորոս Ապոր մասին: Նա ձեր լավ բարեկամն է ու ձեզ համար շատ գործեր է գրել: Լրացավ Հորոս Ապոր ծննդյան 60 տարին:*

## ՈՒՐ ԵՆ ԹԵՔՎՈՒՄ ԾԱՌԵՐԸ

*Թխկու անտառը բոլոր կողմերից պաշտպանված է քամիներից, սակայն ինչպես տեսնում եք նըկարում, բոլոր ծառերը թեքվել են մի կողմի վըրա: Արդյոք այդ ի՞նչ հեքիաթային ուժ է, որ թեքել է նույնիսկ ամենահաստաբուն ծառերը:*

*Գիտնականները պարզել են, որ ծառերը կարող են ծառայել որպես կողմնացույցներ: Այսպես օրինակ, անտառի բոլոր թխկիները թեքվում են դեպի հարավ-արևելք, իսկ բարդիները՝ հյուսիս-արևելք: Տանձենիները մեծ մասամբ թեքվում են դեպի հարավ-արևմուտք, իսկ խնձորենիները գերադասում են թեքվել դեպի հարավ-արևելք:*



*Եվ այսպես, եթե ուշադիր լինեք շրջապատի նկատմամբ, կնկատեք, որ տարբեր ծառատեսակներ ունեն տարբեր «բնավորություն»:*



## ԴԱՐԲԻՆ ՈՒ ԱՐՋԸ

Անտառի խորքում,
Կաղնու տակ հսկա,
Ասում են փայտե
Մի հին տնակ կա։
Եվ այդ տնակում
Արջը կոշկակար
Կոշիկ է կարում
Արջ[illegible]րի համար։
Բայց թե աղվեսը՝
Էն խորամանկը,
Թռցնում է նրա
[illegible]րակ դանակը։
Արջը տեսնում է
Բան դուրս չի գալիս,
Գնում է դարբնին
Պատվեր է տալիս։
— Ինչո՞ւ չէ, եղբայր.
Դանակ կշինեմ,
Բայց դժբախտաբար
Մուրճահար չունեմ։
— Ինձանից էլ լավ
Ուժեղ մուրճահա՞ր,
Էլ ի՞նչ ես ուզում,
Ա՛յ դարբին եղբայր։—
Եվ մուրճը վերցնում
Արջը էն սարի,
Գնում է կանգնում
Առջևը սալի։
Թափով զարկում է,
Ծեծում երկաթը։
Կայծը թռչում է,
Այրում իր թաթը։
Արջը շփոթված
Տանում է բերում
Ու էն խեղճ դարբնին
Գետին է փռում։
Երբ որ դարբինը
Ուշքի է գալիս,
Մի ծերուկ նրան
Խրատ է տալիս.
— Խելքիդ ի՞նչ փչեց,
Այ դարբին եղբայր,
Որ սարի արջին
Արիր մուրճահար։



Նկ. ՌԱՖԻԿ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ռ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван. ул. Кармир банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—11—83, 2—68—16, 2—59—06։

ՎՖ 06561: Պատվեր՝ 812: Տպաքանակ՝ 57276: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 21/VI 1968 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.


# ԱՐՔԻՄԵԴԻ ԽԱՂԸ

*Այս հնագույն խաղը պատմաբանները վերագրում են Արքիմեդին։ Պատրաստելը դժվար չէ։ Դրա համար բավական է ունենալ ամուր ստվարաթղթի մի կտոր։*

*Ստվարաթղթի վրա գծում եք գծագիրը։ Տառերը և կետագիծ սլաքները հեշտացնում են գծագրի նշատումը՝ ԱԲ=ԲԳ, ԳԵ=ԵԶ=ԷԸ, ԳԴ=ԴԵ, ԱԹ==ԹԺ։ Ուղղանկյան ամենահարմար չափերն են՝ 10×20 կամ 8×16 սմ.։ Խնամքով կտրեցեք ստացված ֆիգուրները և ներկեցեք սև գույնով։*

*Յուրաքանչյուր ֆիգուր ունի իր համարը, որը պետք է գրել երկու անգամ. արտաքին կողմում (այսինքն՝ վերևի, ինչպես այդ պատկերված է գծագրում) համարը գրում եք արաբական թվանշաններով, իսկ հակառակ կողմում (ներքևի)՝ հռոմեական։*

## Ուրվանկարներ կազմելու կանոններ

*1. Յուրաքանչյուր ուրվանկարում պետք է օգտագործվեն բոլոր 14 ֆիգուրները։*

*2. Ֆիգուրները կարելի է դեպի վեր շրջել ցանկացած երեսով՝ ինչպես «արաբական», այնպես էլ «հռոմեական»։*

*3. Չի կարելի ֆիգուրները. թեկուզ և ամենափոքր չափով. մեկը մյուսի վրա դնել։*

## Պատասխանում ենք

ՊԻՈՆԵՐ № 5


















4. Ֆիգուրները իրար կողք դնելիս, թույլատրըվում է նրանց միջև բացվածքներ թողնել, որոնք սակայն չպետք է խախտեն ուրվանկարի ամբողջական տպավորությունը: Նախնական ուղղանկյան 10×20 սմ. չափերի դեպքում բացվածքների լայնությունը չպետք է գերազանցի 2 միլիմետրից:

Որպես օրինակ այստեղ բերված են ծննդյան զով շենքի, հողմաղացի, ուղտի և ձկան ուրվանկարները: Ուրվանկարները կազմելիս ուշադրություն դարձրեք հետևյալի վրա.

ա) Ֆիգուրների համարակալումը արաբական և հռոմեական թվանշաններով նպատակ ունի կանխել հնարավոր սխալները, այն իմաստով, որ թույլ չի տալիս շփոթել «արաբական» և «հռոմեական» կողմերը (դա առանձնապես վերաբերվում է 1, 2, 4, 7, 8 ֆիգուրներին):

բ) 3 և 11, ինչպես նաև 4, 7 և 8 ֆիգուրները նույն չափերն ունեն (դա երևում է գծագրի երկրաչափական կառուցվածքից): Հավասար ֆիգուրները, բնականաբար, ուրվանկարում կարող են տեղափոխվել մեկը մյուսի հետ:

գ) Ձկան ուրվանկարը պատկերացում է տալիս բացվածքներով ուրվանկարների մասին:

Զինվելով համբերությամբ, փորձեցեք ինքնուրույնաբար այսպիսի ուրվանկարներ կազմել: Խորհուրդ ենք տալիս սկսել երկրաչափական պարզ ձևեր ունեցող առարկաներից (շինություններ, տրնային գործածության իրեր, մրգեր և այլն):

2.




3.



4.



5.





# Զվարճալի խաղեր

## ԿԱՐՈՂԱՑԻՐ ՔԱՅԼԵԼ ԱՆԱՂՄՈՒԿ

Խաղի բոլոր մասնակիցները շրջան են կազմում, իսկ մեկը (խաղավարը) կանգնում է շրջանի կենտրոնում փակ աչքերով։ Խաղացողները հերթով (առանձին-առանձին) գաղտագողի մոտենում են նրան։ Խաղավարը, լսելով, որ իրեն մոտենում են, բացում է աչքերը։ Խաղացողն անմիջապես կանգ է առնում (նրա կանգնած տեղը նշվում է)։ Հաղթում է նա, ով ամենից շատ է մոտեցել խաղավարին։ Շարժման ազդանշանը խաղացողին տրվում է աննկատ և անաղմուկ։



## ԿԱՐՈՂԱՑԻՐ ԴԻՏԵԼ



Ջոկատը բաժանվում է 2-3 խմբի։ Յուրաքանչյուր խմբին նշանակվում է ղեկավար։ Խմբերը դուրս են գալիս նախապես որոշված տեղամասը և ուշադիր դիտում շրջապատը (ցանկալի է, որքան կարելի է, շատ առարկաներ լինեն)։ Մի քանի րոպեից հետո խմբերը հեռանում են։ Այդ պահին խմբի ղեկավարները փոփոխություն են մտցնում առարկաների դասավորության մեջ. քարեր են ավելացնում, ծառից թաշկինակ են կախում, ճանապարհի վրա ծառի ճյուղ են գցում և այլն։

Ով ավելի շուտ և ճիշտ կկարողանա որոշել տեղի ունեցած փոփոխությունները, նա էլ հաղթում է։

## «ՍԱՀՄԱՆԸ ԽԱԽՏՈՂԻ» ՈՐՈՆՈՒՄՆԵՐԸ

Երեխաները հավաքվում են նախօրոք նշանակված վայրում, որտեղ հրամանատարը՝ խաղի ղեկավարը, հայտնում է նստածներին, որ շուտով «N» շրջանում նախատեսվում է սահմանի «խախտում»։

Մեծահասակ երեխաներից նշանակվում են խմբերի պետեր։ Նրանք ծանոթանում են գործողության տեղանքին։ Վաղ առավոտյան շեփորը ազդարարում է սահմանի «խախտումը»։ Լսելով ազդանշանը, յուրաքանչյուր խումբ գրավում է իր դիրքը՝ կամրջի, գետի, անտառի, ճանապարհի մոտ և այլ տեղերում։

Հենց այդ ժամանակ երևում են «խախտողները» (մեկական «խախտող» յուրաքանչյուր խմբին)։ Նրանք ուսումնասիրելով վայրերը, պետք է արագ և անձայն առաջ շարժվեն. հենց նրանից է կախված ամբողջ խաղի հետաքրքրությունն ու հաջողությունը։ Յուրաքանչյուր «խախտող» իր հետ ունի մի փաթեթ, որտեղ նշված է նրա առաջ շարժվելու պլանը և ներկայանալու վայրը։ «Խախտողը» մոտենում է թշնամու դիրքերին և երբ զգում է, որ իրեն նկատել են, թաքնվում է և աննկատելի քողարկվում։ Նա դիտավորյալ իր փաթեթը և պլանը «կորցնում» է, որը հետագայում նրան որոնող երեխաները գտնում են։ Հետևելով պլանին, նրանք գտնում են «խախտողին»։

Հաղթում է սահմանը «խախտողին» բռնող թիմը։

